Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 21 (40)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1945

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆԸ
## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ
## ՀԱՅԱՍՏԱՆԻ Կ(Բ)Պ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻՆ

ՍՍՌ Միության ժողովրդական կոմիսարների Սովետը և Համամիութենական կոմունիստական (բոլշևիկների) Պարտիայի Կենտրոնական Կոմիտեն Սովետական Հայաստանի 25-ամյակի օրը ողջունում են Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի բանվորներին, կոլխոզնիկներին և ինտելիգենցիային:

1920 թվի նոյեմբերին Հայաստանի աշխատավորները ռուս ժողովրդի օգնությամբ տապալեցին դաշնակների ռեակցիոն հակաժողովրդական կառավարությունը և հաստատեցին սովետական իշխանություն: Սովետական հասարակարգի հիման վրա Հայաստանը ազատ զարգացման և ազգային վերածնության հնարավորություն ստացավ: Անդրկովկասի ժողովուրդների միջև հաստատվեցին բարեկամության և եղբայրական համերաշխության հարաբերություններ:

Սովետական իշխանության տարիներին Հայաստանի աշխատավորները կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ կառուցեցին սոցիալիստական առաջավոր ռեսպուբլիկա՝ զարգացած արդյունաբերությամբ, կոլխոզային գյուղատնտեսությամբ և բարձր կուլտուրայով: Ռեսպուբլիկայում կառուցված են ար-

դյունաբերական խոշոր ձեռնարկություններ՝ Ալավերդու և Ղափանի պղնձի կոմբինատները, Կիրովականի և Ալավերդու գյուղատնտեսական պարարտանյութերի գործարանները, Երևանի Դազգահաշինական գործարանը, Լենինականի Տեքստիլ կոմբինատը, սննդի արդյունաբերության ձեռնարկություններ. կառուցված են Քանաքեռի էլեկտրակայանը, Ձորագետի հիդրոկայանը և կոլխոզային տասնյակ հիդրոկայաններ:

Կոլխոզային կարգերը վերափոխել են Հայաստանի գյուղատնտեսությունը: Ռեսպուբլիկայում կատարված է իռիգացիոն կառուցվածքների շինարարության մեծ աշխատանք: Ոռոգելի տարածությունը ընդարձակվել է մինչև 200 հազար հեկտարի: Կոլխոզները և սովխոզները նշանակալից հաջողություններ են ձեռք բերել խաղողագործության, այգեգործության զարգացման ասպարեզում, մերձարևադարձային և տեխնիկական կուլտուրաների յուրացման գործում:

Իսկական ծաղկման է հասել հայ ժողովրդի կուլտուրան: Նախքան Հոկտեմբերյան Ռևոլուցիան Հայաստանում կար միայն 446 տարրական և 7 միջնակարգ դպրոց: Այժմ ռեսպուբլիկայում գործում են 869 տարրական ու թերի միջնակարգ և 300 միջնակարգ դպրոց, 48 տեխնիկում, 13 բարձրագույն ուսումնական հաստատություն, 43 գիտա-հետազոտական հիմնարկություն, Հայկական Գիտությունների Ակադեմիա: Հայկական ՍՍՌ գրողները, պոետները, նկարիչները, կոմպոզիտորները ստեղծել են գրականության և արվեստի նշանավոր գործեր:

Հայրենական պատերազմի տարիներին հայ ժողովուրդը պատվով կատարեց իր պարտքը Հայրենիքի հանդեպ: Հայ ռազմիկները Սովետական Միության մյուս ժողովուրդների զավակների հետ միասին անձնվիրաբար պաշտպանում էին մեր Հայրենիքի ազատությունը և անկախությունը: Հայաստանի բանվորները, կոլխոզնիկները և ինտելիգենցիան անդուլ կեր-



պով աշխատում էին թշնամու դեմ հաղթանակ նվաճելու համար:

ՍՍՌ Միության ժողովրդական կոմիսարների Սովետը և Համկ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն հաստատ համոզմունք են հայտնում, որ Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի աշխատավորները այսուհետև ևս կպայքարեն Հայաստանի տնտեսության ու կուլտուրայի զարգացման նորանոր հաջողությունների համար, Սովետական պետության հզորության հետագա ամրապնդման համար:

*ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐՆԵՐԻ ՍՈՎԵՏ*
*ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ (ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ) ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ*

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆԸ

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի Նախագահությունը ջերմորեն շնորհավորում է Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի բանվորներին, կոլխոզնիկներին ու ինտելիգենցիային՝ Հայաստանում սովետական իշխանության հաստատման 25-ամյա պանծալի հոբելյանի առթիվ:

Սովետական իշխանության հաստատման շնորհիվ հայ ժողովրդի համար բացվեցին տնտեսական ու կուլտուրական զարգացման լայն հնարավորություններ: Հայաստանի աշխատավորները, Լենին-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ, ռուս ժողովրդի եղբայրական օգնությամբ, անցած 25 տարիներում ստեղծեցին սոցիալիստական զարգացած արդյունաբերություն: Ռեսպուբլիկայում կառուցված են գունավոր մետալուրգիայի խոշոր ձեռնարկություններ, գյուղատնտեսական պարարտանյութերի արտադրության ձեռնարկություններ, լայն զարգացման է հասել սննդարդյունաբերությունը:

Հայաստանի կոլխոզային գյուղացիությունը, գյուղատնտեսական առաջավոր տեխնիկա կիրառելու և ոռոգումը լայնորեն զարգացնելու հիման վրա խիստ բարձրացրել է ռեսպուբլիկայի գյուղատնտեսության մակարդակը:

Սովետական իշխանության տարիներին դպրո-



բեն բարձրացել է Հայաստանի աշխատավորության նյութական բարեկեցությունը: Ռեսպուբլիկայում գոյություն ունի դպրոցների, ԲՈՒՀ-երի, գիտահետազոտական և այլ կուլտուրական հաստատությունների լայն ցանց, որոնք ապահովել են ազգային ինտելիգենցիայի գիտական ու տեխնիկական կադրերի մեծ աճը: Մեծ հաջողություններ են ձեռք բերել հայ ժողովրդի գրականության ու արվեստի զարգացման ասպարեզում:

Հայրենական մեծ պատերազմի օրերին Հայաստանի բանվորները, կոլխոզնիկները և ինտելիգենցիան ռազմաճակատներում ցույց տված իրենց արիությամբ ու հերոսությամբ, ֆաբրիկաներում ու գործարաններում, կոլխոզներում և սովխոզներում կատարած անձնուրաց աշխատանքով իրենց ավանդը մտցրին ատելի թշնամուն ջախջախելու գործում:

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը հաստատ համոզմունք է հայտնում, որ Հայաստանի աշխատավորները նույնքան անձնվիրաբար կպայքարեն իրենց ռեսպուբլիկայի տնտեսության ու կուլտուրայի հետագա զարգացման համար, կամրապնդեն մեր Սովետական Սոցիալիստական Մեծ պետության հզորությունը:

Կեցցե՛ Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան:

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆ

ՄՈՍԿՎԱ, ԿՐԵՄԼ

## ՍՍՌ ՄԻՈՒԹՅԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԿՈՄԻՍԱՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀ

# ԸՆԿԵՐ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻՆ

*Մեր հարազատ հայր Իոսիֆ Վիսսարիոնովիչ.*

*Համաժողովրդական ցնծության այս բերկրալի օրը, Հայաստանում սովետական իշխանության հաստատման 25-ամյակի օրը, ամբողջ հայ ժողովուրդը սրտագին բոցավառ ողջույն է հղում Ձեզ, Սովետական Միության մեծ առաջնորդին, հաղթական Կարմիր Բանակի հանճարեղ զորավարին, հայ ժողովրդի լավագույն բարեկամին և ազատարարին։*

*Այս երջանիկ օրը բոլոր հայերի հայացքներն ուղղված են Ձեզ, մեր սիրելի հորը, ուսուցչին ու բարեկամին, անխուսափելի կործանումից մեր ժողովրդի փրկչին, կործանում, որի առջև նա կանգնած էր 1920 թվի մղձավանջային օրերին։*

*Ձեզ, որ ծանոթ եք մեր ժողովրդի պատմական ծանր ճակատագրին, լավ հայտնի է նրա անցած դժվարին ուղին։ Մեր ժողովուրդը իր բազմադարյան պատմության ընթացքում շատ անգամ է կանգնել բնաջնջման սպառնալիքի առաջ, բազմիցս օտարերկրյա զավթիչները ոտնակոխ են արել մեր քրտինքով և արյունով ոռոգված հարազատ հողը, կողոպտել նրա հարստությունները, վիրավորել ազատասեր հայ ժողովրդի ազգային արժանապատվությունը։*



*Բայց ո՛չ պարսկական սատրապները, ո՛չ հռոմեական լեգեոնները, ո՛չ նենգ բյուզանդացիներն ու արաբները, ո՛չ էլ մոնղոլների, սելջուկների ու թյուրքերի վայրենի հրոսակախմբերը, որոնք ավերիչ փոթորկի նման անցել են հայ հողի վրայով, չկարողացան ընկճել մեր ժողովրդի ազատասեր ոգին։*

*Այդ դաժան մարտերում հայերը պաշտպանել ու պահպանել են իրենց հոգևոր կուլտուրայի մեծությունը, իրենց մարտական տրադիցիաները և ազատության ու անկախության անսասան կամքը։*

*Սակայն, անհավասար մարտերում զոհ տալով իր հարյուր հազարավոր զավակներին, հայ ժողովուրդը չկարողացավ իսկական ազատություն ձեռք բերել և վերականգնել իր պետականությունը։*

*Մեր ժողովուրդը առանձնապես մղձավանջային օրեր ապրեց երիցս նզովյալ դաշնակների, հայ ժողովրդի դավաճանների կարճատև տիրապետության ժամանակ։ Հենց դաշնակների տիրապետության ժամանակն էր, որ հայ ժողովուրդը կանգնած էր կործանման եզրին, նրա վրա կախվել էր ֆիզիկական լիակատար բնաջնջման սպառնալիքը։*

*Մեր ժողովրդի համար այդ օրհասական պահին հնչեց Հայաստանի մեծ ա զ ա տ ա ր ա ր ի՝* Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալինի *ձայնը։*

*Մենք երբեք չենք մոռանա Կովկասյան Բյուրոյի և Ադրբեջանի Կոմպարտիայի Կենտկոմի միացյալ նիստում 1920 թվին արտասանված ստալինյան խոսքերը, որոնք կոչ էին անում՝ «Պետք է ինչ գնով էլ լինի, փրկել Հայաստանը, շուտով փրկել Հայաստանը»։*

*Բոլոր հայերի սրտերում հավերժ կապրեն Ձեր այդ անմահ խոսքերը։*

*Թանկագին ընկեր* Ստալին։

*Մենք շատ լավ հասկանում ենք, որ Ձեր կոչի և անմիջական ղեկավարության շնորհիվ, բոլշևիկյան պարտիայի շնորհիվ, ռուս մեծ ժողովրդի և Կարմիր*

Բանակի օգնության շնորհիվ մեր ժողովուրդը կարողացավ թոթափել դաշնակների ատելի լուծը և Հայաստանում սովետական իշխանություն հռչակել:

Հաղթանակեցին Ձեր մարգարեական խոսքերը, թե «միայն սովետական իշխանության գաղափարը Հայաստանին բերեց խաղաղություն և ազգային վերածննդի հնարավորություն»:

1920 թվի նոյեմբերին Հայաստանում սովետական իշխանության հաստատումով նոր դարագլուխ բացվեց հայ ժողովրդի պատմության մեջ:

Ցարիզմից և դաշնակներից ժառանգություն ստանալով ավեր մի տնտեսություն, մի երկիր, որտեղ տիրում էին սովն ու աղքատությունը, մեր ժողովուրդը թևերը քշտած ձեռնամուխ եղավ խաղաղ ստեղծարար աշխատանքի:

Այսօր լրանում է այդ ստեղծարար աշխատանքի 25 տարին: Այս երջանիկ օրը մենք ուրախ ենք Ձեզ, թանկագին Իոսիֆ Վիսսարիոնովիչ, հաղորդելու արդյունաբերության, գյուղատնտեսության, արվեստի, կուլտուրայի և գիտության զարգացման ասպարեզում մեր հաջողությունները, որ Հայաստանի աշխատավորները ձեռք են բերել Ձեր հանճարեղ ղեկավարությամբ և շնորհիվ Ձեր մշտական օգնության:

Մենք ձեռնամուխ եղանք մերկ ու ամայի տեղում ստեղծելու արդյունաբերություն, վերականգնելու և զարգացնելու քայքայված գյուղատնտեսությունը, նոր շունչ հաղորդելու ամբողջ աշխարհով մեկ առանձինառանձին օջախներում կղզիացած և մեկուսացած վիճակում գտնվող մեր կուլտուրային ու արվեստին, բարձրացնելու աշխատավորության լայն զանգվածների բարեկեցությունը:

Սովետական Միության ժողովուրդների համերաշխ ընտանիքում, Սովետական Կառավարության մշտական օգնությամբ, Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ անցած քառորդ դարում Հայաստանը դար-



ձավ անճանաչելի: Նա դարձավ զարգացած ինդուստրիալ երկիր առաջավոր գյուղատնտեսությամբ:

Չտեսնված ծաղկման հասան կուլտուրան և արվեստը:

Սովետական իշխանության տարիներին Հայաստանում կառուցվել է 120 արդյունաբերական խոշոր ձեռնարկություն: Բացի դրանից, կառուցվել են տեղական արդյունաբերության և արհեստագործական կոոպերացիայի մի քանի հարյուր ձեռնարկություններ: Ռեսպուբլիկայում էներգետիկ լուրջ բազա է ստեղծված արդյունաբերության զարգացման համար: 1945 թվին 86 անգամ ավելի շատ էլեկտրաէներգիա է արտադրվել, քան 1914 թվին:

Այս տարիների ընթացքում ստեղծվել են արդյունաբերության մի շարք նոր կարևոր ճյուղեր՝ քիմիական, ղազգահագործիքային, մեքենաշինական, ռետինի, տեքստիլ, սննդի և այլն: Մեծ չափով ընդլայնվել է լեռնահանքային արդյունաբերությունը:

Սովետական պետությունը բազմակողմանի օգնություն է ցույց տվել մեր ռեսպուբլիկային՝ նրա արդյունաբերական և կուլտուրական արագ զարգացման համար: 25 տարվա ընթացքում Սովետական Կառավարությունը Հայաստանի արդյունաբերական շինարարության մեջ ներդրել է մի քանի միլիարդ ռուբլի: Արդյունաբերության համախառն արտադրանքը 1945 թվին հասավ մոտ 400 միլիոն ռուբլու, 1919 թվի մեկ միլիոն 700 հազար ռուբլու դիմաց:

Անցած ժամանակաշրջանում լուրջ հաջողություններ են ձեռք բերվել գյուղատնտեսության ասպարեզում: Ցանքատարածությունը 1919 թվի 82 հազար հեկտարից այժմ հասել է 461 հազար հեկտարի: Հացահատիկային և տեխնիկական կուլտուրաների բերքատվությունը կրկնապատկվել է: Ռեսպուբլիկայի կոլխոզներն ու սովխոզները առանձնապես մեծ հաջողություններ են

ձեռք բերել խաղողի և պտղատու այգիների տարածու-
թյունն ընդարձակելու ասպարեզում:

Միայն վերջին հինգ տարում ավելի քան 5 հազար
հեկտար մրգի և 3 հազար հեկտար խաղողի այգիներ
են գցվել: Ծխախոտի ցանքատարածությունը 1919 թվի
100 հեկտարից այժմ հասցված է մինչև 8 հազար հեկ-
տարի: Կարտոֆիլի ցանքատարածությունը 1.800 հեկ-
տարից մինչև 23 հազար հեկտարի: Մտցված են նոր
թանկարժեք կուլտուրաներ՝ շաքարի ճակնդեղ, խորդե-
նի և այլն:

Հայաստանի գյուղացիությունը այս հաջողություն-
ները ձեռք է բերել ստալինյան կոլխոզային կարգերի
հաղթանակի շնորհիվ: Գյուղացիական տնտեսություն-
ների 99,6 տոկոսը այսօր միավորված է կոլխոզնե-
րում:

Սովետական Կառավարությունը Հայաստանի գյու-
ղատնտեսությանը հսկայական օգնություն է ցույց
տվել ոռոգման, նոր ջրանցքների շինարարության և
գյուղատնտեսական աշխատանքները մեքենայացնելու
գործում:

Անցած 25 տարիների ընթացքում ռեսպուբլիկայի
իրիգացիոն շինարարության մեջ ներդրվել է 237 մի-
լիոն ռուբլի, կառուցվել և շահագործման են հանձնվել
91 ջրանցք, որոնց թվում այնպիսի խոշոր ջրանցքներ,
ինչպես Լենինի անվան, Ստալինի անվան, Միկոյանի
անվան, Սարդարաբադի, Լոռու, Աղիամանի, Գառնու,
Դալմայի ջրանցքները և այլն: Այժմ կոլխոզների ուժե-
րով ու միջոցներով կառուցվում են նոր խոշոր ջրանցք-
ներ՝ Թալինի, Ստորին Զանգվի, Նորքի, Համբերդի և
այլն: Այս միջոցառումների շնորհիվ ոռոգելի ցանքա-
տարածությունը ընդարձակվել է 100 հազար հեկտա-
րով, կամ թե կրկնապատկվել է 1919 թվի համեմատու-
թյամբ:

Ռեսպուբլիկայի կոլխոզային ու սովխոզային դաշ-
տերում աշխատում են հազարավոր տրակտորներ, կոմ-



բայններ, կալսիչներ և գյուղատնտեսական այլ մեքե-
նաներ:

Կրկնապատկվել է խոշոր և մանր եղջերավոր անա-
սունների գլխաքանակը: Ռեսպուբլիկայի բոլոր կոլխոզ-
ներն ունեն երեքից մինչև հինգ անասնապահական
ֆերմա:

Արդյունաբերության և գյուղատնտեսության այս-
պիսի բուռն աճը արմատապես բարելավել է ռեսպուբ-
լիկայի աշխատավորության նյութական բարեկեցու-
թյունը:

Տարեց-տարի ավելանում են կոլխոզների եկա-
մուտները: Մեր կոլխոզնիկները դարձել են ունևոր ու
երջանիկ:

Վերջին տարիներին հացահատիկի համախառն բեր-
քը ավելացել է ավելի քան 6 միլիոն փթով:

Կոլխոզների դրամական եկամուտները 1940 թվի
218 միլիոն ռուբլուց 1944 թվին հասել են 483 միլիոն
ռուբլու: Կոլխոզների անբաժանելի ֆոնդի հատկացում-
ները 1940 թվի 37,7 միլիոն ռուբլուց 1944 թվին կազ-
մել են 100 միլիոն ռուբլի:

Այժմ կոլխոզները ձեռնամուխ են եղել 1945 թվի
առատ բերքի բաշխմանը և աշխօրերի դիմաց կստանան
ավելի շատ մթերք, քան անցյալ տարի:

Ռեսպուբլիկայի կոլխոզներն ու սովխոզները ժամա-
նակին են կատարել գյուղատնտեսական մթերքներ
հանձնելու ասպարեզում պետության հանդեպ ստանձ-
նած իրենց պարտավորությունները:

Ռեսպուբլիկայի տնտեսական աճման բազայի վրա,
լենինյան-ստալինյան ազգային իմաստուն քաղաքակա-
նության անշեղ կենսագործման շնորհիվ, չտեսնված
տեմպով բարձրացել է կուլտուրայի, ժողովրդական
կրթության, առողջապահության, գիտության և ար-
վեստի մակարդակը:

Ցարիզմի և դաշնակների ժամանակ հետամնաց Հա-
յաստանը սովետական իշխանության տարիներին դար-

ձել է համատարած գրագիտության երկիր։ Մեր ռեսպուբլիկան այժմ ծածկված է թերի միջնակարգ, միջնակարգ դպրոցների, տեխնիկումների և բարձրագույն ուսումնական հաստատությունների խիտ ցանցով։

Ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանում սովետական իշխանության տարիներին ստեղծվել են 13 բարձրագույն ուսումնական հաստատություն, որտեղ սովորում են ավելի քան 14 հազար ուսանող։

Լայնորեն տարածված է գյուղական ակումբների, գրադարանների, ընթերցարանների, սոցկուլտ տների, կինո-թատրոնների և կուլտուր-լուսավորական այլ հաստատությունների ցանցը։ Միայն 1945 թվին կոլխոզների ուժերով ու միջոցներով կառուցվում է 144 կոլխոզային ակումբ ու գրադարան, որոնց մի մասն ավարտված է ու շահագործման հանձնված։

Շրջանային բոլոր կենտրոններն ունեն կինո-թատրոններ և ռադիո-հանգույցներ, շրջանների մեծ մասն ունի դրամատիկ թատրոն։

Բոլոր պայմաններն ստեղծված են աշխատավորության բուժսպասարկման և առողջապահության պահպանման համար։

Երկրի տնտեսական զարգացման հիման վրա մեր ժողովուրդը հնարավորություն է ստացել վերածնելու և էլ ավելի զարգացնելու ձևով ազգային և բովանդակությամբ սոցիալիստական իր կուլտուրան ու արվեստը։

Սովետական իշխանության տարիներին Հայաստանում ստեղծված են օպերայի և բալետի թատրոն, դրամատիկ թատրոններ, կոնսերվատորիա, կերպարվեստի և թատերական ինստիտուտներ, երաժշտական կոմեդիայի թատրոն և 20 թատրոն՝ ռեսպուբլիկայի շրջանային կենտրոններում։

Ստեղծված են դերասանների, ռեժիսորների, կոմպոզիտորների, կերպարվեստագետների և երաժիշտների ստեղծագործական հիանալի կադրեր, որոնք իրենց անդուլ աշխատանքով



առաջ են տանում մեր ժողովրդի արվեստը։
Հայաստանի սովետական գրողները, շարունակելով հայ
հարուստ գրականության լավագույն տրադիցիաները,
այս տարիներին ստեղծել են մեր սոցիալիստական դա-
րաշրջանին արժանավայել բազմաթիվ հիանալի գեղար-
վեստական գործեր։
Մեր պոետները, գրողները, գուսաննե-
ները իրենց երկերում արտացոլում են մեր ժողովրդի
հայրենասիրական զգացմունքները դեպի սոցիալիստա-
կան հայրենիքը, դեպի բոլշևիկների մեծ պարտիան և
նրա հանճարեղ առաջնորդներ Լենինն ու Ստալինը:
Սովետական իշխանության ծնունդն է Հայրենական
պատերազմի տարիներին ստեղծված Հայկական ՍՍՌ
Գիտությունների Ակադեմիան, որի շուրջը համախմբ-
ված են ավելի քան 500 գիտական աշխատող։
Ռեսպուբլիկայում գործում են 45 գիտահետազո-
տական ինստիտուտներ և հաստատություններ, որոնց
մեջ աշխատում են ավելի քան 700 գիտական աշխա-
տող։
Հայաստանի գիտնականներն իրենց անխոնջ աշ-
խատանքով օգնում են սովետական առաջավոր գիտու-
թյան զարգացմանը և Սովետական Միության ռազմա-
տնտեսական հզորության ամրապնդմանը։
Թանկագին Իոսիֆ Վիսսարիոնովիչ.
Մենք ուրախ ենք զեկուցելու Ձեզ, որ լենինյան-
ստալինյան ազգային իմաստուն քաղաքականության
անշեղ կենսագործման շնորհիվ բուռն կերպով աճել են
ազգային սեփական կադրերը՝ ժողովրդական տնտեսու-
թյան, կուլտուրայի ու արվեստի բոլոր ճյուղերի հա-
մար։
Սովետական իշխանության տարիներին, մեր բարձ-
րագույն ուսումնական հաստատությունները տվել են
ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի համար
ավելի քան 11 հազար մասնագետ։ Տեխնիկումները տվել
են մոտ 20 հազար մասնագետ։ Ռեսպուբլիկայի գյուղա-

տնտեսության մեջ ներկայումս աշխատում են 1.100 որակյալ գյուղատնտեսներ, անասնաբույծներ, անասնաբույժներ ու մեխանիկներ և ավելի քան 2 հազար միջին որակի գյուղատնտեսական և անասնաբուժական անձնակազմ։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ և շինարարությունների վրա աշխատում են 3.123 ինժեներատեխնիկական աշխատող, և դա վառ ապացույց է հանդիսանում ազգային կադրերի նկատմամբ հոգատարություն ցույց տալու և նրանց աճեցնելու վերաբերյալ ստալինյան գաղափարների գործնական իրականացման։

Հայաստանի աշխատավորները այս հաջողությունները ձեռք են բերել Հայաստանի բոլշևիկների պարտիայի անխոնջ աշխատանքի շնորհիվ, որն անշեղորեն իրագործելով ստալինյան դիրեկտիվները, մոբիլիզացնում և ուղղություն է տալիս մեր ջանքերին՝ մեր ռեսպուբլիկայի տնտեսության և կուլտուրայի հետագա ծաղկման համար։

Թանկագին Իոսիֆ Վիսսարիոնովիչ.

Մենք շատ լավ գիտակցում ենք, որ մեր այս բոլոր հաջողությունները հնարավոր են դարձել միայն Սովետական իշխանության շնորհիվ, Միութենական կառավարության, ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի ամենօրյա ղեկավարության ու օգնության և անձամբ Ձեր մշտական հայրական հոգատարության շնորհիվ։

Հայ ժողովուրդը այս երջանիկ օրը սրտանց իր խոր շնորհակալությունը և անսահման երախտագիտությունն է հայտնում Ձեզ, ընկեր Ստալին, Սովետական Կառավարությանը և մեր բոլշևիկյան պարտիայի Կենտրոնական Կոմիտեին։

Մեր ձեռք բերած հաջողությունների մեջ մեզ անգնահատելի օգնություն է ցույց տվել ռուս մեծ ժողովուրդը, որի հետ մեր ժողովուրդը շատ դարեր առաջ կապել է իր բախտը։ Այս հանդիսավոր օրը մենք



մեր սրտագին շնորհակալությունն ենք հայտնում մեր ավագ եղբորը՝ ռուս մեծ ժողովրդին։

Մենք երբեք չենք մոռանա այն հսկայական օգնությունը, որ մեր ռեսպուբլիկայի էկոնոմիկայի և ժողովրդական տնտեսության բարձրացման գործում ցույց են տվել Վրաստանի և Ադրբեջանի եղբայրական ժողովուրդները։

Այս բերկրալի օրը մենք մեր ջերմ շնորհակալությունը և եղբայրական բոցավառ ողջույնն ենք հղում մեր դարավոր բարեկամներին՝ Վրաստանի և Ադրբեջանի ժողովուրդներին։

Թանկագին ընկեր Ստալին.

Դուք ազգային հարցի մեծ տեսաբանի և ժողովուրդների բարեկամության կերտողի հանճարեղ խորաթափանցությամբ մեր բազմազգ երկրի ժողովուրդներին համախմբեցիք միասնական ու միաձույլ, անխորտակելի ընտանիքի մեջ, որը դարձավ Սովետական մեծ տերության ուժի ու հզորության անսպառ աղբյուրը։ Աշխարհում չկա այնպիսի ուժ, որը կարողանար խախտել կամ թուլացնել ՍՍՌՄ ժողովուրդների այդ սրբազան ստալինյան բարեկամությունը։

Այս երջանիկ օրը մենք մեր սրտագին ողջույններն ենք հղում սովետական մեծ ընտանիքի եղբայրական ժողովուրդներին։

Թանկագին ընկեր Ստալին.

Հայ ժողովուրդը մեր մեծ հայրենիքի, սովետական իշխանության և բոլշևիկյան պարտիայի նկատմամբ ունեցած իր նվիրվածությունը առանձնահատուկ ուժով դրսևորեց գերմանա-ֆաշիստական ավազակային իմպերիալիզմի դեմ Սովետական Միության մղած Հայրենական մեծ պատերազմի ահեղ օրերին։

Ձեր կոչով Սովետական մեծ Միության բոլոր ժողովուրդների հետ միասին հայ ժողովուրդը մեկ մարդու նման ոտքի ելավ իր սովետական հայրենիքի

պաշտպանության համար։ Հայաստանի հարյուր հազարավոր զավակներ քաջարի Կարմիր Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի շարքերում հերոսաբար մարտնչեցին Հայրենական պատերազմի բոլոր ճակատներում, խիզախորեն պաշտպանելով մեր մեծ Հայրենիքի պատիվը, ազատությունը և անկախությունը։ Մենք հպարտ ենք այն գիտակցությամբ, որ ավելի քան 42.500 հայ ռազմիկներ պարգևատրված են Սովետական Միության մարտական շքանշաններով ու մեդալներով, մոտ 100 հայ ռազմիկներ արժանացել են Սովետական Միության Հերոսի բարձր կոչմանը։

Ընկեր Ստալին, Ձեր աճեցրած ստալինյան պանծալի գեներալիտետի թվում կա ավելի քան 50 հայ գեներալ, որոնք տիրապետելով հաղթելու ստալինյան գիտությանը, հաջողությամբ իրագործում էին Կարմիր Բանակի Գերագույն Գլխավոր Հրամանատարության պլանները։ Մենք հպարտ ենք, որ գերմանական ֆաշիզմի որջը հանդիսացող Բեռլինի վրա գրոհող և նրա վրա հաղթանակի դրոշը բարձրացրած Կարմիր Բանակի միավորումների թվում Ձեր պատմական հրամանում նշվեց 89-րդ Թամանյան եռակի շքանշանակիր Հայկական դիվիզիան։

Անձնվիրաբար աշխատում էին թիկունքում մնացած մեր ռեսպուբլիկայի բանվորներն ու բանվորուհիները, կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները և ինտելիգենցիան, որոնք հերոսական աշխատանքով իրենց ավանդը մտցրին թշնամու դեմ հաղթանակ տանելու գործում։

Ընկեր Ստալին, Ձեր կոչով ֆաշիզմի դեմ մղված պայքարի դրոշի տակ համախմբվեցին նաև արտասահմանում ապրող մեր եղբայրակից հայերը՝ առաջին իմպերիալիստական պատերազմի զոհերը, որոնք սփռված են ամբողջ աշխարհում։ Նրանք բոլոր հնարավոր միջոցներով ակտիվորեն մասնակցում էին ֆաշիզմի դեմ մղվող պայքարին։ Տասնյակ հազար հայեր դաշնակիցների բանակների շարքերում և Ֆրանսիայի, Հարավ-



Սլավիայի, Բուլղարիայի, Ռումինիայի և այլ պարտիզանական ջոկատներում խիզախորեն, իրենց ժողովրդին արժանավայել կերպով, մարտնչում էին հիտլերյան հորդաների դեմ։ Արտասահմանյան հայ գաղութներում կազմակերպվեց միջոցների հավաքում Կարմիր Բանակի համար տանկային շարասյուներ կառուցելու նպատակով։ Արտասահմանյան մեր արյունակից եղբայրները, ինչպես երբեք՝ համախմբվեցին իրենց մայր-հայրենիքի՝ Սովետական Հայաստանի շուրջը։

Գերմանական զավթիչների դեմ մղված վիթխարի ճակատամարտում, որն իր հավասարը չունի պատերազմների պատմության մեջ, Սովետական պետությունը Ձեր իմաստուն ղեկավարությամբ դիմացավ ծանր պատերազմի բոլոր փորձություններին և նրանից դուրս եկավ հաղթականորեն, է՛լ ավելի ամրացած և հզոր։

Ամբողջ աշխարհը, ամբողջ առաջադեմ մարդկությունը համոզվեց, որ սովետական հասարակարգը աշխարհի ամենակենսունակ, ամենահզոր և իսկական դեմոկրատական հասարակարգն է։

Մարդկությունը երբեք չի մոռանա, որ Կարմիր Բանակի և նրա Գերագույն Գլխավոր Հրամանատար, բոլոր ժամանակների հանճարեղ զորավար, Գեներալիսիմուս Ստալինի շնորհիվ աշխարհը փրկվեց ստրկացումից, իսկ մարդկության դարավոր քաղաքակրթությունը փրկվեց կործանումից ու ոչնչացումից։ Աշխարհի ժողովուրդները դարեր շարունակ կփառաբանեն սովետական ժողովրդի, նրա Կարմիր Բանակի և սովետական ժողովրդի մեծ առաջնորդ Իոսիֆ Վիսարիոնովիչ Ստալինի անմահ սխրագործությունը։

Թանկագին ընկեր Ստալին.

Հայ ժողովուրդը երբեք չի մոռանա, որ քաջարի Կարմիր Բանակը Ձեր Գերագույն Գլխավոր հրամանատարությամբ Հայաստանը փրկեց գերմանա-ֆաշիստական բարբարոսների արշավանքից, որոնք Սովետա-

կան Միության ժողովուրդներին բնաջնջելու իրենց մարդատյաց պլաններում խնդիր էին դրել՝ ավարտել իրենց արյունալի գործը՝ հայ ժողովրդի ոչնչացումը, որ նրանք սկսել էին դեռևս առաջին իմպերիալիստական պատերազմի տարիներին, երբ կայզեր Վիլհելմի թելադրությամբ Թյուրքահայաստանում բնաջնջվեցին հարյուր հազարավոր անպաշտպան երեխաներ, ծերունիներ և կանայք։

Համաժողովրդական ցնծության այս օրը ամբողջ հայ ժողովուրդը ի սրտե շնորհակալություն է հայտնում Ձեզ, մեր հարազատ Իոսիֆ Վիսսարիոնովիչ, և մեր պանծալի Կարմիր Բանակին՝ մեր ժողովրդին կործանումից փրկելու համար։ Ստալինի անունը ապրում է յուրաքանչյուր հայի սրտում։ Այդ մեծ անունը մենք արտասանում ենք մեծագույն հրճվանքով և անսահման սիրո ու երախտագիտության զգացմունքով։

Մենք միահամուռ կերպով ողջունում ենք Սովետական Կառավարության ստալինյան իմաստուն արտաքին քաղաքականությունը, որը հետևողականորեն պաշտպանում է Սովետական պետության և սովետական բոլոր ինչպես մեծ, այնպես էլ փոքր ժողովուրդների շահերը։

Մենք համոզված ենք, որ արդարացիության սկզբունքների վրա հիմնված Սովետական Կառավարության արտաքին քաղաքականությունը կհաղթանակի և վերջ կդրվի հայ ժողովրդի նկատմամբ իմպերիալիստական պետությունների կողմից անցյալում թույլ տրված վայրագ անարդարությանը։

Հայաստանում Սովետական իշխանության հաստատման 25-րդ տարեդարձը մենք նշում ենք խաղաղ պայմաններում, երբ լիակատար հաղթանակ է տարված թշնամու դեմ և լիկվիդացված են պատերազմի օջախները Արևմուտքում ու Արևելքում։

Բայց մենք, սովետական մարդիկ, լավ հիշում ենք Ձեր իմաստուն ցուցումները՝ երբեք չհանգստանալ



ձեռք բերված հաջողություններով։ Այս հանդիսավոր օրը մենք երդվում ենք Ձեզ, ընկեր Ստալին, որ չենք խնայի ո՛չ ուժ, ո՛չ եռանդ և ամեն բան կանենք ամրապնդելու համար մեր հաղթանակը, որ սովետական ժողովուրդը ձեռք է բերել կատաղի պայքարում և որը ճանապարհ է բաց արել մեր Սովետական հայրենիքի նոր մեծ վերելքի և սովետական ժողովրդի բարեկեցության հետագա բարձրացման համար։

Մենք առանց ձեռքներս ծալելու կաշխատենք արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ աշխատանքի արտադրողականությունը է՛լ ավելի բարձրացնելու համար և ամեն կերպ կօգնենք Սովետական պետության ռազմատնտեսական հզորության հետագա ամրապնդմանը։

Մենք հավաստիացնում ենք Ձեզ, ընկեր Ստալին, որ Հայաստանը եղել է, հանդիսանում է ու կլինի անառիկ ֆորպոստ Սովետական Միության հարավային սահմանագլխին։ Մենք մեծ խանդավառությամբ ձեռնամուխ կլինենք ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման նոր հնգամյա պլանի իրագործմանը։ Արագ կբուժենք պատերազմի կողմից երկրին պատճառված վերքերը։ Մեր ինտելիգենցիան անդուլ կերպով կաշխատի սովետական գիտության ու տեխնիկայի հետագա զարգացման համար։ Կաշխատենք այնպես, ինչպես Դուք սովորեցնում եք մեզ, ընկեր Ստալին:

Մեր հարազատ Իոսիֆ Վիսսարիոնովիչ.

Այժմ, ինչպես երբեք, հայ ժողովուրդը ամուր համախմբված է իր հարազատ Սովետական Կառավարության, բոլշևիկյան պարտիայի շուրջը, սիրելի առաջնորդ, հայր և ուսուցիչ մեծ Ստալինի շուրջը։

Մենք պատրաստ ենք առաջիկայում ևս պատվով կատարելու Ձեր բոլոր առաջադրանքները, պարտիայի և կառավարության բոլոր դիրեկտիվները։

Հայ ժողովուրդը իր համախմբվածությունը կրկին

անգամ ցույց կտա ՍՍՌՄ Գերագույն Սովետի առաջիկա ընտրությունների ժամանակ, լավ գիտակցելով, որ Գերագույն Սովետի ընտրությունները հանդիսանում են մեր ժողովրդի համախմբման և Սովետական պետության հետագա ամրապնդման ևս մեկ հզոր միջոցը։

Ցանկանում ենք Ձեզ, թանկագին Իոսիֆ Վիսսարիոնովիչ, ամուր առողջություն և երկար կյանք ի բարօրություն սովետական մեծ ժողովրդի։

Թող կեցցե՛ և բարգավաճի մեր մեծ, հզոր Սովետական հայրենիքը։

Կեցցե՛ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության կառավարությունը։

Կեցցե՛ ՍՍՌ Միության ժողովուրդների ստալինյան անխախտ բարեկամությունը։

Կեցցե՛ բոլշևիկների մեր պանծալի պարտիան, ԼԵՆԻՆԻ-ՍՏԱԼԻՆԻ պարտիան։

Կեցցե՛ Սովետական մեծ տերության հերոսական Կարմիր Բանակը և Ռազմա-Ծովային Նավատորմը։

Փա՜ռք սովետական ժողովրդի առաջնորդին, Մեծ ՍՏԱԼԻՆԻՆ։

Նամակը քննարկվել և ընդունվել է ռեսպուբլիկայի բանվորների, կոլխոզնիկների, ծառայողների և ինտելիգենցիայի ժողովներում։

BՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Ի. տ. պատ. խմբագրի՝
Ա. ՀԱՅՐՅԱՆ



ՎՖ 0276Г … 1468, տիրաժ 5200

ՀՍՍՌ Ժողկոմսովետին կից Թերթերի և ամսագրերի տպարան. 1945 Թ.